Եթէ ունին որոշ զարգացում, պիտի ըսեն տղուն առանց վարանելու՝ – Եթէ քաղաքակրթուած ժողովուրդներու մեծ մասը Հնդեւրոպական ընտանիքին կը պատկանի, Հայն ալ նոյն ընտանիքէն է, եւ եւրոպական մեծ ազգեր դեռ չկազմուած, դեռ գոյութիւն չունեցած, Հայերը ունեցած են բարձր քաղաքակրթական արժէք, ստեղծած են լեզու մը որ համարժէք եւ երբեմն նոյնիսկ աւելի բարձր է քան յունարէնն ու լատիներէնը: Հայերէնով թարգմանուած են շատ մը նախնական աշխատանքներ որոնք այսօր իսկ աղբիւր կը ծառայեն օտարներու համար իբր աւելի վաւերական մեկնակէտ: Պիտի ըսէ թէ երբ կարգ մը օտար լեզուներ ստորաբաժանումներն են Հնդեւրոպական մայր լեզուներու, հայերէնը ինքնին մաս կը կազմէ այդ լեզուախումբին իբրեւ անջատ մայր լեզու զոր Հայը հպարտութեամբ դարձուցած է միայն իրեն սեփականութիւն: Ծնողքը պիտի յիշէ իր զաւակին կամ զաւակներուն հին եւ նոր հայ ստեղծագործութիւններէն կարեւորները, պիտի խօսի անոնց հայկական գիւտերու եւ նրբութիւններու մասին ճարտարապետութեան եւ արուեստի մէջ, պիտի պատմէ անոնց հին եւ նոր հերոսամարտերը, պիտի շեշտէ Վարդանանցի արժէքը, մասնանշելով մասնաւորապէս այն պարագան որ ցոյց կուտայ Հայուն քաջութիւնը, անվախ նկարագիրը, անկախ մտածողութիւնը որով մղած է Վարդանանց պատերազմը եւ որ՝ առաջին թումբը եղած է որ ասիական վայրենի հորդաներ չկարենան յառաջանալ մինչեւ Եւրոպայի կեդրոնը եւ եւրոպական ազգերուն առիթ եւ ժամանակ տուած է որ անոնք պատրաստուին եւ կարենան կազմակերպուիլ ինքնապաշտպանութեան համար: Այստեղ ցոյց պէտք է տրուի Հայուն մեծութիւնը եւ իր ըրած զոհողութիւնը ուրիշ ազգերու փրկութեան գործին մէջ:

Անկարելի է որ այսպիսի մեծ դրուագներու ծանօթութիւնը չստեղծէ տղուն մէջ ազգային գիտակցութիւն եւ ազգային հպարտութիւն, որով աւելի պիտի սիրէ իր ազգը եւ անոր սիրով աւելի պիտի կապուի իր ծնողքին, պիտի չուզէ հեռանալ անկէ, ծնողքն ալ փոխադարձաբար աւելի բարոյական հեղինակութիւն պիտի ունենայ զաւակին վրայ: Այսպիսի մթնոլորտի մը մէջ ինչ ալ կը տրուի, անջնջելի կը մնայ եւ տղան պէտք մը չզգար նոյն իսկ իր շրջանակէն հեռանալու:

Գ. Գաղափարապաշտութիւն.— Ծնողքներու եւ զաւակներու մէջ սերտ յարաբերութիւն պահելու երրորդ գործօնն է գաղափարապաշտութիւնը: Մարդիկ կ'այլասերին գաղափարապաշտութեան պակասով. բայց ծնողքները չեն կրնար դադրիլ մտածելէ թէ՝ կրնայ ջնջուիլ գաղափարապաշտութիւնը. ներկայիս ամէնէն աւելի մտահոգութիւն յառաջ բերող հարցը նիւթապաշտութիւնն է. եթէ նախնական շրջանէն պայքար մը չըլլայ տղուն մէջ՝ դէպի նիւթականացում գլտորման, տղան աւելի շուտ կը սայթաքի եւ աւելի շուտ կը կլանուի նիւթապաշտութեամբ, քանի տապլտկի անոր մէջ, պահավիժի այնտեղ, այնքան աւելի կը հեռանայ իր ընտանիքէն:

Ծնողքին հանդէպ ազնիւ զգացումը իր մէջ զօրեղանալով, աւելի պիտի նուիրուի իր ազգին եւ պիտի ուզէ հոն ալ ըլլալ օգտակար էակ մը, եւ այսպէս ծնողքէն, ազգէն վերջ, իր ակնարկը պիտի երթայ մարդկութեան եւ պիտի ուզէ անոր ալ օգտակար ըլլալ, պիտի գործէ իբրեւ ՄԱՐԴ, իբրեւ նկարագրի տէր մէկը: Դժուար է մէկը պատրաստել այս ուղղութեամբ, բարեբախտաբար Հայերուս մէջ կան բազմաթիւ երեւոյթներ որոնք մեր գործը աւելի կը դիւրացնեն:

Այս երեք ազդակները առաւելապէս պէտք է գործեն միաժամանակ եւ ամբողջ հայութեան մէջ որպէսզի մէկ մտածողութեամբ միատեսակ հայութիւն ունենանք, եւ Հայեր ըլլան կապուած իրարու գոնէ ընդհանուր գիծերու մէջ: Բայց այդ աշխատանքը կրնայ կատարուիլ միայն ազգային կեդրոնական կազմակերպութեամբ, որուն մէջ երիտասարդներուն լայն ասպարէզ տրուի, որպէսզի աւելի կապուին իրենց ազգին եւ սերունդէ սերունդ աւելի բանիրուն, նուիրուած եւ գիտակից դիրքեր ունենանք: Այն ատեն, գալիք նոր սերունդները պիտի չուզեն այլեւս փնտռել առաւելութիւններ ուրիշ ազգերու մէջ եւ ստորակայութիւն իրենց ազգային գոյութեան մէջ: Մենք կը նմանինք հարուստի մը որ իր հարստութեան մասին գաղափար իսկ չունի եւ իր անգիտակցութեամբ կը թողու որ իր հարստութիւնը չքանայ:

Դասախօսութենէն ետք տեղի ունեցան կարծիքի փոխանակութիւններ:

ՇՐՋՈՒՆ ԹՂԹԱԿԻՑ

## ՏՈՄՍԵՐ

### ՀԱՐՈՒՍՏ ԵԿԵՂԵՑԱՍԷՐԸ

●

— Պատմեցէք նայինք, Տիկիններ, ի՞նչ կայ, ի՞նչ չկայ... Ձեր աղանե՞րը ինչ ջուրի վրայ են... Օրիորդ Աղաւնիս, դո՞ւն ինչպէս ես, նայիմ...

— Փա՜ռք Աստուծոյ, ամէնքս ալ լաւ ենք, ազգին գործերով ժամանակ կ'անցընենք...

— Աղէկ կ'ընէք... Մեզի պէս փաճառականները այնչափ զբաղած են որ ազգը ձեզի պէսներուն մնացած է...

— Իրաւունք ունիք, Պ. Թադէոս, մեզմէ աշխատանք, ձեզմէ ալ դրամ...

— Անանկ է, ունեցողը տալու է:

— Տարի մը, տարի ու կէսէն մեր մատուռը կը շինուի... Հիմակուհիմա շատ բան մը ժողված չենք, բայց յոյս ունինք որ...

— Է՜, կ'ունենաք, մի՛ յուսահատիք... Եկեղեցին կարեւոր բան է...

— Այո՛, շատ կարեւոր...

— Սա մեր եկեղեցական աղօթքները չկա՞ն, սքանչելի բաներ են... «Առաւօտ լուսոյ, արեգակն արդար, առ իս լոյս ծագեա՛... Հաստեա՛ հաւատոյ, հաստատեա՛ յոյսով, հիմնեցո՛ սիրով...»

— Հրաշալի՜ են... Մեր նպատակն է որ այդ հրաշալիքները չմեռնին՝ այս օտար հայրենիքներուն մէջ... Բայց...

— Կեցցե՛ս, օրիորդ Աղաւնիս... Աղբար տա մեր Շնորհալի ըսուած մարդը ի՞նչ աղուոր բաներ գրեր է... «Այսօր անճառ, լուսոյն ծագումն ի փրկութեան մեր կատարումն...»

— Խնդիրը այն է որ առանց եկեղեցիի, Շնորհալիները կը մոռցուին... Եւ առանց դրամի...

— Ժամանակին ես ալ տիրացու եղած եմ... Կիրակի առտու կանուխ, եկեղեցի կ'երթայինք եւ աղուոր աղուոր կ'երգէինք... «Նորաստեղծեալ Բանն յանէից գիս կը սպաննէ...»

— Ներողութի՛ւն, ի սկզբանէ... Ինչպէս ըսինք, դրամը անհրաժեշտ է գործի սկսելու հա...

— Հապա՞ սա «Հաւատով Խոստովանիմ»ը... «Բննող զաղտնեաց, մեղայ քեզ կամաւ եւ ակամայ, գիտութեամբ եւ անգիտութեամբ, թողութիւն շնորհեա՛...

— Մեր ցանկին վրայ ձեր պատուական անունն ալ...

— Ուրիշ հրաշալիք մըն ալ սա «Հրաժարիմք»ը... «Մեղայ զօրութեամբ հոգւոյս, խորամանկութեամբ, անզգամութեամբ, յանդգնութեամբ եւ երկչոտութեամբ, չուայլութեամբ եւ ժլատութեամբ...:

— Այնպէս՝ որ եկած ենք խնդրելու որ դուք ալ...:

— Տալու են, տալու են, ունեցողը տալու է որ այս գիւղն ալ իր մատուռը ունենայ...: Առանց մեր Առաքելական Եկեղեցիին, լմնցած ենք, պիտի կորսուինք:

— Ճի՛շդ ատոր համար ալ, մեր Յանձնախումբը չորս կողմը ինկած է որ քանի մը հազար թով քովի բերէ...:

— Քանի մը հազարով ըլլալիք գործ չէ ատիկա... Են քիչը հարիւր հազար հանելու էք...

— Դժուար է, պարոն Թադէոս:

— Դժուա՞րս ինչ է... Մէյ մը սա աղքատներէն սկսէք... Անոնք մինչ կանխիկ դրամ կ'ունենան... Մեզի պէս չեն... Մենք մեր գործէն դրամ չենք կրնար քաշել...

— Դուք ալ գումար մը խոստա...

— Ե՞ս... Կը ցաւիմ... Ես, քանի մը ամիսէն Ֆրանսա պիտի հաստատուիմ...

— Հոգ չէ, տուէք, յետոյ գացէք:

— Է՜, ատ ըսածնիդ եղա՞ւ հիմա... Ամօթ չէ՞... Մէյ մը դուք հիմերը դրէք, ես Ֆրանսայէն բան մը կը ղրկեմ... Նորէն կ'ըսեմ, սա աղքատներուն օձիքը մի՛ ձգէք:

— Ուրիշ բան մըն ալ կայ... Եկող կիրակի եկեղեցիին համար հանդէս մը...

— Դուք գիտէք որ իմ Տիկինս ատանկ հանդէսներու չերթար... Ատանկ հինդ, տասը տոլարով տեղ չէք հաներ...

— Շնորհակալ ենք, պարոն Թադէոս, ցտեսութիւն...

— Ըսածս չմոռնաք, աղքատներուն օձիքը չձգէք...

— Այո՛, այո՛, Աստուած մէկ օրը հազար ընէ՝ հոգիով, սրտով այդ հարուստներուն...:

ԵՐՈՊԱՑԻ

## ԳԱՂՈՒԹԷ ԳԱՂՈՒԹ

ԷՋՄԻԱԾՆԻ կաթողիկոսին Անգլիա այցելութեան առթիւ (19 Ապրիլ 1956), Լոնտոնի Համայնական Խորհուրդին նախագահը, Պ. Ս. Քիւրքճեան, զաղութին անունով խոստացած էր 1500 անգլ. ոսկիի գումար մը հաւաքել Բջնիի վանքին վերանորոգման համար: Լոնտոնի անգլերէն տեղեկատուէն կ'իմանանք թէ այդ գումարը հաւաքուած է արդէն, շնորհիւ մասնաւոր յանձնախումբի մը ջանքերուն եւ Պ. Նուպար Կիւլպէնկեանի առատաձեռնութեան: Տիկիններ Փ. Իզմիտլեան եւ Ս. Քիւրքճեան հաւաքած են 382 ոսկի. Տիկիններ Է. Պէնլեան, Ա. Մութաֆեան, Ռ. Զէյթըր եւ Ս. Մատաթ՝ 324 ոսկի. Տիկիններ Լ. Ապաճեան եւ Է. Ամասեան՝ 386 ոսկի: Գումարը ամբողջացուցած է Պ. Ն. Կիւլպէնկեան՝ 413 ոսկիի նուէրով մը:

ԹԵՀՐԱՆԻ «Արարատ» Միութեան եւ Թեմական Խորհրդի նախաձեռնութեամբ Իրանի հայաշատ քաղաքներուն մէջ պիտի տօնուի դրագէտ Մալխասի Յոբելեանը: Մասնաւոր յանձնախումբեր կազմուած են Թեհրանի, Արաքանի, Իսֆահանի եւ Թավրիզի մէջ:

ՏԽՐՈՒՆԻ— Գահիրէի մէջ մեռած է Պ. Պետրոս Տեփոյեան: Հանգուցեալը 1915ին Ամերիկայէն Կովկաս գացող կամաւորներու խումբին մաս կը կազմէր: Ապա հաստատուած էր Եգիպտոս, ուր կը զբաղէր առեւտրական գործով: Ատենօք մըն ալ վարած է Ռամկավար «Արեւ»ի խմբագրութիւնը:

ԾԱՆՕԹ երգահան Ալան Յովհաննէսի մէկ գործը՝ «Թրիփթիք», նուագուած է Նիւ Եորքի հեռատեսիլէն եւ ձայնասփիւռէն: Գործը կը բաղկանայ երեք մասերէ եւ ունի խմբերգի, նուագախումբի եւ մեներգի բաժիններ:

ՊԱՔՈՒԻ պատանեկան թատրոնին մէջ բեմադրուած է Յովհ. Թումանեանի «Գիքորը»: Վիպակին թատերական վերծանումը կատարած է Գ. Գաբրիէլեան: Ներկայացումը ջերմ ընդունելութեան արժանացած է պատանի հանդիսատեսներու կողմէ:

»ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (234)

# ՍԱՄՈՒԷԼ

●

(ՊԱՏՄԱԿԱՆ ՎԷՊ, 364 - 400)

Գ. ԳԻՐՔ

3.— ԶՈՒԻԹԱՑ

●

— Անպատճառ: Բացի այն, որ աստղերը բարի ճանապարհ չեն դուշակում, մենք դեռ սպասում ենք մի քանի զունդերի, որ յետ են մնացել, եւ նրանց գոյութեան մասին ամենեւին տեղեկութիւն չունենք:

— Ուրեմն, այդ երեք օրում, ինչպէս լաւ նկատեց Արտաւազդը, անգործութեան մէջ կարելի է բոլորովին ձանձրանալ:

— Քեռիդ թոյլ չի տայ որ ձանձրանաս, սիրելիս, մէջ մտաւ Հայրը: Նա քեզ համար որսորդութեան ամենափառաւոր հանդէսներ կը պատրաստէ Արաքսի ափերի մօտ:

— Եւ ինձ համար, ընդմիջեց պատանի Արտաւազդը:

— Ի հարկէ, եւ քեզ համար, ասաց Մերուժանը ժպտալով: Առանց քեզ ի՞նչ ուրախութիւն կ'ունենայ մեր որսորդութիւնը:

— Հանաքը մի կողմ, ասաց նա ինքնավստահ պարծենկոտութեամբ: Ես ուզում եմ այդ Պարսիկներին ցոյց տալ Հայ տղայի քաջութիւնը: — Վերջին խօսքերը արտասանեց նա հայերէն, իւր վառվռուն աչքերը խորամանկ կերպով դարձնելով դէպի ներկայ պարսիկ աւագները:

Բայց Մերուժանը ծիծաղելով թարգմանեց նրա ասածը:

— Գիտէ՞ք ինչ է ասում իմ փոքրիկ ազգականը. նա պարծենում է զարմացնել ձեզ իւր քաջագործութիւններով: Եւ ես խոստանում եմ էգուց պատրաստել նրա համար որսորդութեան հանդէս:

— Տեսնենք, էգուց կը տեսնենք, ձայն տուին պարսիկ աւագները լուրջ կերպով.

— Բայց իմ դէմ դուրս բերեցէք իմ հասակակիցներին:

— Ի հարկէ, այնպէս կը լինի: Մենք այժմեանից հրաժարւում ենք քեզ հետ մրցելուց: Մեր բանակում քո հասակակից տղաներ շատ կան:

Սամուէլը ոչինչ չէր խօսում: Նա արդէն իւր ցանկութեանը հասած էր համարում: Մերուժանը հրամայեց, որ միւս օրուայ համար որսորդութեան պատրաստութիւններ լինէին Արաքսի ափերի մօտ:

### 4.— ԱՐԱՔՍԻ ՈՐՈԳԱՅԹՆԵՐԸ

Հին Արաքսը զարմանալի որոգայթներ ունէր: Նա ե՛ւ զարմանալի քմահաճութիւններ ունէր: Անյիշելի ժամանակներից յամառութեամբ կռւում էր իւր անհաւասար եղերքի հետ եւ, կարծես, դըժգոհ էր այն նեղ շաւղից որ գծել էր նրա ընթացքի համար նոյնքան քմահաճ բնութիւնը: Նա սիրում էր ընդարձակութիւն, սիրում էր ազատութիւն: Նեղ շաւիղը վրդովեցնում էր նրան:

Երբեմն լեռնային երկու զուգահեռական զօտիներ միաբանւում էին, եւ սեղմում էին նրան իրանց անձուկ եւ խորին ձորակի մէջ: Այդ միջոցին նրա կատաղութիւնը չափ չունէր: Ահռելի յորձանքներով զարկւում էր իւր ապառաժոտ ափերին, գոռում էր, գոչում էր, փրփրում էր, եւ մարդ կարծես լսում էր նրա սոսկալի որոտմունքի մէջ այս ճակատագրական խօսքերը. «Նե՜ղ է... նե՜ղ է... խեղդւո՜ւմ եմ...»:

Երբեմն լեռնային զօտիների միաբանութիւնը խախտւում էր, բաժանւում էին միմեանցից, հեռանում էին միմեանցից, եւ բաց էին անում նրա առջեւ լայն, ընդարձակ տարածութիւն: Այդ միջոցին նրա կամայականութիւնը չափ չունէր: Ազատուելով իւր նեղ կիրճից, մի չար վիշապի նման, անխնայ կերպով ողողում էր, հեղեղում էր իւր հարթ, կանաչազարդ ափերը, եւ կամ, մի արբեցած հսկայի նման, երբեմն դէպի աջ էր թեքւում, երբեմն դէպի ահեակ էր խոտորւում, եւ երբեմն ուղիղ ճանապարհով էր գնում:

Նա իւր ազատութիւնը խելացի կերպով վայելել չգիտէր: Յանկարծ վիթխարի թեւքերը բաց էր անում, խլում էր ցամաքից մի կտոր հող եւ, ճնշելով իւր զով գրկի մէջ, կղզիացնում էր նրան: Առ ժամանակ երեխայական սիրելութեամբ՝ սկսում էր փայփայել եւ խ՚ամել իւր խաղալիկը: Կղզին աճում էր, կանաչազարդւում էր, աճում էին թուփերը եւ վառվռում էին ծաղիկները: Երկնքի թռչունը հիւսում էր այնտեղ իւր բոյնը, վայրի անասունը սնուցանում էր այնտեղ իւր ձագուկներին: Կղզին ներկայացնում էր մի գեղեցիկ փունջ, որով զուարճանում էր նա եւ, պճնասէր երիտասարդի նման, զարդարում էր իւր հպարտ կուրծքը: Բայց յանկարծ, կարծես, ձանձրանում էր նա, ալիքները փրփրալով բարձրանում էին, կոհակները կատաղաբար մռնչում էին, եւ մի քանի րոպէի մէջ կըլանում էին գեղեցիկ զարդը, եւ նրա հետքն անգամ չէր երեւում:

Հայոց գետերի թագաւորը վարւում էր իւր յօրինած կղզիների հետ նոյն կերպով, որպէս Հայոց երկրի թագաւորը վարւում էր իւր մէջ կղզիացած նախարարութիւններին հետ:

ՐԱՖՖԻ

բար մը Յունուար 10ին տեսակցութիւն–ներ ունեցան Խ. Միութեան եւ Չինաստանի վարիչներուն հետ։ Ներկայ էին Խրուշչեւ, Բուլկանին, Շեփիլով եւ փոխ-վարչապետ Միկոյեան, Չինաստանի վար-չապետը եւն.։ Զեկոյցը կ'ըսէ թէ որոշ-ուեցաւ ամրապնդել բոլոր համայնավար երկիրներու յարաբերութիւնները։

× Փեշթայէն կը հեռագրեն թէ սուր-կանութիւնը եւ քաղաքապահ զօրքը կրակ բացին հազարաւոր բանուորներու վրայ, որոնք հակաբոլշեւիկ ցոյցեր կը կատա-րէին։ Առ նուազն երկու հոգի սպաննուե-ցան եւ շատեր վիրաւորուեցան։ Ցուցա-րարները նշանաբանական ունէին եւ անբաւական կը գտնէին կառավարութեան կատարած զիջումները։ Թերթերը կը գը-րեն թէ մահուան դատապարտուած են երիտասարդ մը եւ աղջիկ մը, այն ամ-բաստանութեամբ թէ մասնակցած են ա-պստամբութեան։ Ուրիշ 15 երիտասարդ-ներ ալ դատապարտուեցան 5էն 15 տարի տաժանակիր աշխատանքի։

× Եուկոսլաւիա հաւանեցաւ երկու մի-լիոն տոլարի վարկ մը բանալ Հունգա-րիոյ։

× Պուլկարական գործակալութիւնը կը ծանուցանէ թէ Սոֆիայի մէջ խորհրդակ-ցութիւններ կատարուեցան Պուլկարիոյ եւ Չինաստանի ներկայացուցիչներուն մի-ջեւ։ Վիէննա հասած լուրերու համա–ձայն, հակաբոլշեւիկ ցոյցեր տեղի ունե-ցած են հարաւային Պուլկարիոյ մէջ։ Յունուար 3ին ոստիկանութիւնը ցուցա-րարները ցրուած է հրասայլերով եւ զրա-հապատ կառքերով Փլովտիվի (Ֆիլիպէ) զօրանոցին առջեւ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ներքին նախարարու-թիւնը կը ծանուցանէ թէ համայնավար լրտեսութեան պետերէն Սթեֆանոս Փա-փայանիս ձերբակալուելով մահուան դա-տապարտուած է զինուորական ատեանին կողմէ։

ԱՆԳԱՐԱՅԷՆ կը հեռագրեն թէ զինուո-րական ատեանը ցկեանս բանտարկութեան դատապարտեց Պոլսոյ պուլկարական նա-խորդ փոխ–հիւպատոսը, Զոլաքով եւ իր մեղսակիցներէն Ալի Տեմիրովը։ Բայց նը-կատելով որ երկուքն ալ կրնան օգտուիլ մեղմացուցիչ պարագաներէն, պատիժը անմիջապէս վերածուեցաւ 15 տարի բան-տարկութեան։

ԵԳԻՊՏՈՍԷՆ արտաքսուած բոլոր ֆը-րանսացի ուսուցիչները պաշտօնի կոչուե-ցան Ֆրանսայի դպրոցներուն մէջ։

ԱՆԳԼԻՈՅ նոր դահլիճին կազմը պիտի հաղորդուի այսօր, կիրակի։ — Հաւանա-կան է որ վարչապետը Ուոշինկթըն հրա-ւիրուի մօտերս։

ՌՈՒՄԲ ՄԸ նետուեցաւ փուժատեան կուսակցութեան 15րդ թաղամասի կեդ-րոնին դէմ։ Երկու աճարեկիչներ ձերբա-կալուեցան։ Փուժատ ճառ մը խօսելով ը-սաւ թէ պատրաստ է իշխանութիւնն ըս-տանձնելու։

ՀԱՅԻ ԵՒ ՄԻՍԻ ՏԱԳՆԱՊ կը տիրէ Պոլ-սոյ մէջ։ Կարգ մը թաղեր չեն կրցած հաց ճարել։ Մեծաքանակ արմտիք ապսպրը-ուած է Ամերիկա։

ՊՈԼՍՈՅ վերջին թղթաբերէն կ'իմա–նանք թէ Շէհզատէպաշըի մզկիթին բա-կին մէջ հրդեհ ծագելով 40 խանութներ մոխիր դարձած են։ Մզկիթին մարմար-ներն անգամ հալած են տաքին սաստկու-թենէն։ Վնասը՝ աւելի քան մէկուկէս միլիոն ոսկի։

ASSOCIATION DES CONCERTS
CHOUTEAU
(*Orchestre Symphonique de Paris*)
Շաբաթ, փետրուար 2, ժամը 17·45
SALLE GAVEAU
45 Rue La Boëtie
Յայտագիր՝ Չայքովսքի քոնչերթօ
Սոլիստ՝

## ՄԱՌԻ ԻՒՍԹԱՏ (ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ)

Տոմսերը առաջուընէ ապահովել։
Գին 200 եւ 400 ֆրանք։
Դիմել՝ ՀՐԱՆՏ ԲԱԼՈՒԵԱՆ գրատունը, 43 շիւ Ռիշէ։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ Խաչի Անկենի մասնաճիւղին տարեկան հանդէսը՝
ԱՊՐԻԼ 7ԻՆ
Մանրամասնութիւնները յաջորդիւ։

## ՄԵԿՆՈՒՄ

ՄԱՐՍԷՅԼ.— Տէր եւ Տիկին Գառնիկ Անդրիկեան իրենց Քանատա մեկնումին առթիւ ներողութիւն կը խնդրեն բոլոր այն բարեկամներէն որոնցմէ չկրցան հրա-ժեշտ առնել։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Կապոյտ Խաչի Ալֆորվիլի մասնաճիւ-ղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Էլմայեանէ 3000 ֆր., իրենց զաւկին՝ Էլիզապէթի ծննդեան առթիւ։

## ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԵՐ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբին հայերէնի դասերը կ'աւանդուին ամէն չորեքշաբթի, երեկոյեան ժամը 8էն 9,30, Պ. Կարպիս Աֆրիկեանի կող-մէ, Ազգ. Տան մէջ, 32 ռիւ տը Թրէվիզ, Փարիզ։

Արձանագրուելու համար դիմել Պ. Աֆ-րիկեանին կամ խումբին վարչութեան, ա-մէն չորեքշաբթի։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆԻ

## «1957Ի ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ»

**664** մեծադիր էջերով, հարիւրաւոր հին ու նոր նկարներով եւ ճոխ ու շահեկան բովանդակութեամբ։

Կը ծախուի «Յառաջ»ի խմբագրատունը, ինչպէս նաեւ Փարիզի հայ գրավաճառնե-րուն մօտ։

Մարսէյլի մէջ դիմել Ա. Շահպազեա-նին, 49 ռիւ տէ Փըթիթ Մարի, Մարսէյլ։
Գին՝ 1200 ֆրանք։

## ՊԵԼՃԻՔԱՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Գեղարուեստական յերեկոյթ նուիր-ուած ԴԱՆԻԷԼ ՎԱՐՈՒԺԱՆԻ Պելճիքա ու-սանողութեան յիսնամեակին։

Այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30ին, Պրիւսէլի Համալսարանի Ուսանողական Տան մէջ, 22 Ավընիւ Փոլ Հէկէր։

## Կ'ՈՒԶՈՒԻ

Խանութի մը մէջ աշխատելու համար գործաւորուհի մը որ արդուկ ընել գիտ-նայ։ Նախընտրելի է որ կարէ ալ հասկը-նայ։ Կրնայ նաեւ միայն որոշ օրեր աշ-խատիլ։ Դիմել՝ Հ. Աքէլեան
21 ռիւ Պօռէկօ, Փարիզ (20րդ)
Հեռաձայն՝ Մէնիլ 55-85

## ԾԱԽՈՒԻ Է

ՔԼԱՄԱՐԻ մէջ կօշիկի խանութ մը, ար-հեստանոցով եւ բոլոր մեքենաներով։ Կը յարմարի նաեւ ուրիշ արհեստի կամ ա-ռեւտուրի։ Վարձակալութիւնը (պայ) նոր է։ Մանրամասնութեան համար դի-մել՝

**Setrak Kanayan**
**11, Bd. Rodin Issy-les-Moulineaux**
**(Seine)**

## ՀԱՅ–ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Մամուլի տակ է Նոյեմբեր-Դեկտեմ-բեր, 48 էջ։ Լոյս կը տեսնէ գալ շաբթու։ ճոխ բովանդակութեամբ.—

Կէօթէ բժիշկ եւ գիտուն (Շ. Նարդու-նի).— Ֆրանկախտը (Տոքթ. Պ. Մխաք-եան).— Երգարան... բժշկարան (Շ. Ն.).— Երբ մորթը կը հակազդէ (Քիրիչ-եան).— Կատաղութիւնը (Տոքթ. Բարա-խանեան).— Անձկութեան գլխացաւ (Տոքթ. Սերոբեան).— Ի՞նչ տեսակ միս ուտել (Տոքթ. Շ. Այվազեան).— Երեւան քաղաքը (Քաղհան).— Յօդացաւի զոհե-րուն (Տոքթ. Քորոն).— Պատմութիւն ակռաներու (Տոքթ. Գ. Այվազեան).— Զաւակ բերե՞լ թէ չբերել (Տոքթ. Աչ-ճեան).— Կանկար (Բժշկական համայնա-գիտարան).— Նիւթեր հայ բժշկ. պատ-մութեան (Ե. Մակարեան).— Օրօրոցը անհրաժե՞շտ է (Տոքթ. Ազատանի).— Երբ չի գործեր լեարդը (Տոքթ. Տէքսթրէ)։

Տարեկան բաժնեգինը 1000 ֆրանք, ար-տասահման 1200 ֆրանք։ Դիմել Շ. Նար-դունիի, «Յառաջ»ի հասցէով։

*Imp. Araxes - 46, rue Richer, Paris* (9e)

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

●

Հ. Յ. Դ. «ՓՈԹՈՐԻԿ» խումբի ժողո-վը տեղի կ'ունենայ հինգշաբթի 17 Յուն-ուար, երեկոյեան ժամը ճիշդ 9ին, 17 ռիւ Պլէօ։

ՊԷՐՊԷՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ նախկին սա-ները որոշած են վերակազմել «Պէրպէրեա-նի Սանուց Միութիւն»ը։ Բոլոր նախկին սաները ժողովի կը հրաւիրուին երկու-շաբթի երեկոյ, 14 Յունուար ժամը 9ին, Քաֆէ Ռեժանի վերնայարկը (Մէթրօ Քա-տէ) ուր պիտի կազմուի վարչութիւնը։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանին տօնական օրերու դադարը վերջացած ըլլալով, վերաբացումը կը կատարուի Յունուար 16ի չորեքշաբթի գիշերը, նուիրուած՝ Դ. Դեմիրճեանի յի-շատակին։ Խօսք պիտի առնեն քանի մը մտաւորականներ։

Կ'ՈՒԶՈՒԻՆ

Տունը աշխատող բանուորուհիներ շը-միզիէի համար։ Դիմել՝
**Ets. TAVITIAN**
**5, Bd. St. Denis — Tél. Cen.-2285**

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԿԱՐՕ ԳԷՈՐԳԵԱՆԻ

## «1957Ի ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵԳԻՐՔԸ»

664 մեծադիր էջերով, հարիւրաւոր հին ու նոր նկարներով եւ ճոխ ու չահեկան բովանդակութեամբ:

Կը ծախուի «Յառաջ»ի խմբագրատունը, ինչպէս նաեւ Փարիզի հայ գրավաճառներուն մօտ:

Մարսէյլի մէջ դիմել Ա. Շահպաղեանին, 49 ռիւ տէ Փըթիթ Մարի, Մարսէյլ:

Գին՝ 1200 ֆրանք:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ՀԱՅ—ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ.

Նոյեմբեր-Դեկտեմբեր, 48 էջ, ճոխ բովանդակութեամբ:

Կէօթէ բժիշկ եւ գիտուն (Շ. Նարդունի).— Ֆրանկախտը (Տոքթ. Գ. Միսաքեան).— Երգարան... բժշկարան (Շ. Ն.).— Երբ մորթը կը հակազդէ (Բիրիշեան).— Կատաղութիւնը (Տոքթ. Բարախանեան).— Անձկութեան գլխացաւ (Տոքթ. Սերոբեան).— Ի՞նչ տեսակ միս ուտել (Տոքթ. Շ. Այվազեան).— Երեւան քաղաքը (Թաղհան).— Ցօղացաւի գնհերուն (Տոքթ. Թորոն).— Պատմութիւն ակռաներու (Տոքթ. Գ. Այվազեան).— Զաւակ բերե՞լ թէ չբերել (Տոքթ. Աչճեան).— Կանկար (Բժշկական համայնագիտարան).— Նիւթեր հայ բժշկ. պատմութեան (Ե. Մակարեան).— Օրօրոցը անհրաժե՞շտ է (Տոքթ. Ազատանի).— Երբ չի գործեր լեարդը (Տոքթ. Տէքսթրէ):

Տարեկան բաժնեգինը 1000 ֆրանք, արտասահման 1200 ֆրանք: Դիմել Շ. Նարդունիի, «Յառաջ»ի հասցէով:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ Խաչի Անկենի մասնաճիւղին տարեկան հանդէսը՝

ԱՊՐԻԼ 7ԻՆ

Մանրամասնութիւնները յաջորդով:

●

Մանուկներու ծպտեալ հանդէսը կիրակի 7 Ապրիլ, Սէրքըլ Միլիթէրի մէջ, նախագահութեամբ Տիկն. Միութեան Որբ. Օգն. Մարմնի:

## ԳՈՐԾ ՓՆՏՌՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Փարիզի Հայ Աղքատախնամի Ընկերային Օգնութեան յանձնախումբը, որ կը հետաքրքրուի գործ փնտռողներու տեղաւորման հարցով, ներկայիս առաջարկներ ունի, Սէն Թ'Ուէնի և Ալֆորվիլի ածուխի մթերանոցներուն կողմէ շօֆէօր - լիվրէօրի եւ մանէօվրի համար: Լաւ վճարումով: Փափաքողները կրնան դիմել Աղքատախնամի գրասենեակը, 32 ռիւ տը Թրէվիզ, Փարիզ:



Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ
ԵՒ
ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՇՏՕՆ

### ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ

կիրակի 27 Յունուար ժամը 17,30ին

Notre-Dame du Liban
17 Rue d'Ulm

Métro :Cardinal Lemoine

կը պատարագէ՝

Հ. ԿԱՐԱՊԵՏ Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

Առաջնորդ Ֆրանսայի Հայ Կաթողիկէ համայնքին

Նախագահութեամբ Սամուէլ-Մուրատեան վարժարանի տեսչութեան եւ Մուրատ-Ռափայէլեան նախկին աշակերտներու Միութեան:

Կը հրաւիրուին ազգային կազմակերպութիւնները, միութիւնները եւ հանգուցեալ Վարդապետին յիշատակը յարգողները:

⁂

Անհատական հրաւէր ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

Տիրաջան Հարեան եւ զաւակը Ժօժօ, Յարութիւն Ղազարոսեան, Աստղիկ Իսպիրեան կը ծանուցանեն մահը իրենց կնոջ, մօր եւ քրոջ

ՍՐԲՈՒՀԻ ՀԱՐԵԱՆԻ

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի ուրբաթ առտու, ժամը 10ին, Պիսեթրի հիւանդանոցի մատրան մէջ:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Հրանդ Վարդանեան եւ զաւակը՝ Գէորգ, ինչպէս եւ այլ տիկին Քնարիկ Վարդանեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, իրենց կնոջ, մօր եւ հարսին

ՎԱՐԴՈՒՀԻ ՎԱՐԴԱՆԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ:

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Ժիրայր Թիւյսիւզեան (Պոլիս) կը փնտռէ իր եղբայրը՝ Վահրամ, հօրը անունը՝ Համբարձում, մօրը անունը՝ Բրալիոն: Ծնած է 1920-21ին Հասքէոյ: 1927-28ին Կարմիր Խաչի միջոցով ղրկուած է Ֆրանսա Յունաստանէն անցնելով, ընկերակցութեամբ քոյր Քրիստինի:

Տեղեկացնել «Յառաջ»ին: Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել:

## Կ'ՈՒԶՈՒԻ

Խանութի մը մէջ աշխատելու համար գործաւոր մը որ արդուկ ընել գիտնայ: Նախընտրելի է որ կարէ ալ հասկընայ: Կրնայ նաեւ միայն որոշ օրեր աշխատիլ: Դիմել՝ Հ. Աբէլեան

21 ռիւ Պօռէկօ, Փարիզ (20րդ)
Հեռաձայն՝ Մէնիլ 55-85

## «ՅԱՌԱՋ» ԿԸ ՆՈՒԻՐԷ

Տրակինեանէն Նոր Տարուան առթիւ Օր. Աստղիկ Գասիկեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր ծնողքին՝ Տէր եւ Տիկին Գասիկեաններու:

## ՇԱՏ ԿԱՐԵՒՈՐ

Անգամ մը եւս կը խնդրենք բոլորէն որ «Յառաջ»ի չէք-փոսթալը չ'օգտագործեն թերթին հետ կապ չունեցող գումարներ ղրկելու համար:

Թերթին չպատկանող բոլոր գումարները ղրկել ՄԻԱՅՆ ՄԱՆՏԱ-ՔԱՐՏՈՎ:

ASSOCIATION DES CONCERTS
CHOUTEAU
(*Orchestre Symphonique de Paris*)

Շաբաթ, փետրուար 2, ժամը 17·45

SALLE GAVEAU
45 Rue La Boëtie

Ցայտագիր՝ Զայքովսքի քոնչերթօ

Սոլիստ՝

### ՄԱՌԻ ԻՒՍԹԱՏ (ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ)

Տոմսերը առաջուընէ ապահովել:

Գին 200 եւ 400 ֆրանք:

Դիմել՝ ՀՐԱՆՏ ՍԱԼՈՒԵԱՆ գրատունը, 43 ռիւ Ռիշէ եւ Գ. Ադամեանի:

ՊՈՄՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ (ՄԱՐՍԷՅԼ)

20 Յունուար, Գ. կիրակի Ծննդեան, սկիզբ ժամերգութեանց ժամը 8, Ս. պատարագ ժամը 10ին: Հանդիսաւոր հոգեհանգիստ ,ըստ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագնեանի կտակին ժամը 11,30ին:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆր. Կ. Խաչի Պուլ. Օտտոյի մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ այս կիրակի ժամը 15ին, Ս. Յակոբ եկեղեցիին մէջ: Երգեր եւ արտասանութիւններ մանուկներու կողմէ:

Կը հրաւիրուին ծնողները եւ հասարակութիւնը:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

●

Հ. Յ. Դ. «ՓՈԹՈՐԻԿ» խումբի ժողովը տեղի կ'ունենայ հինգշաբթի 17 Յունուար, երեկոյեան ժամը ճիշդ 9ին, 17 ռիւ Պլէօ:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս ուրբաթ երեկոյեան ժամը ճիշդ 8h30ին, Յոյներու սրահը, 65, Ռիւ Պոնֆուա: Խիստ կարեւոր օրակարգ:

ԻԹԱԼԻ.— Հ. Յ. Դ. Աղբիւր-Սերոբ Մ. Նօթինեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը, այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Ներկայ պիտի ըլլան կոմիտէի ներկայացուցիչները:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ենթակոմիտէներուն եւ խումբերուն վարչութիւնները այս շաբաթ ժամը 9ին, Ահարոնեան ակումբը: Բոլոր վարչութիւններուն ներկայութիւնը պարտաւորիչ, բացի Ավինեոնի Մուրատ եւ Նիսի Գէորգ Չաւուշ խումբերէն:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Շրջ. վարչութիւնը ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի իր մասնաճիւղերը այս երկուշաբթի օր ժամը 16ին, Քաֆէ Ռեժան:

## ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԵՐ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբին հայերէնի դասերը կ'աւանդուին ամէն չորեքշաբթի, երեկոյեան ժամը 8էն 9,30, Պ. Կարպիս Աֆրիկեանի կողմէ, Ազգ. Տան մէջ, 32 ռիւ տը Թրէվիզ, Փարիզ:

Արձանագրուելու համար դիմել Պ. Աֆրիկեանին կամ խումբին վարչութեան, ամէն չորեքշաբթի:

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Տարեկան ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ կիրակի, 3 Փետրուար, ժամը 16-24
ԼԷ Զ'ԱՄՊԱՍԱՏԷՕՐ, 3, Ավընիւ Կապրիէլ (Շան զ'էլիզէ)

Հռչակաւոր նուագախումբ ՌԱՄՈՆ ՄԷՆՏԻԶԱՊԱԼ

ԼՈԼԱ ՄՕՐԷՆՕ (երգ) Ա. ԱԶՆԱՒՈՒՐ (երգ)

Իրանահայ յայտնի պարուհի Լ. ԱՒԵՏԻՍԵԱՆ պիտի պարէ հայկական, կովկասեան եւ պարսկական պարեր

Կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Էլիզէ 67-03: Մուտք 500 ֆրանք

THEATRE DE L'ŒUVRE

55, Rue de Clichy (Métro : Clichy)

կը ներկայացնէ



ԺԱՆ-ԺԱՔ-ՎԱՐՈՒԺԱՆԻ
(Վարուժան Ուզունեան)
Նոր թատերախաղը
CONCERTO
(Երկու արար)

Ամէն իրիկուն ժամը 21ին, բացի երեքշաբթիէն։ Կիրակի՝ ժամը 15ին եւ 21ին։

---

ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբին, այս կիրակի ժամը 4էն 10, Ազգ. Տան մէջ (32 rue de Trévise)։

Ճոխ պիւֆէ եւ գեղարուեստական բաժին։ Կը հրաւիրուին բոլոր անդամները ու փափաքողները։

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ.— Վասպուրականի Հայր. Միութիւնը Բարեկենդանի առթիւ կը պատրաստէ ընտանեկան խնջոյք-պարահանդէս մը, թատերական ներկայացումով, Կիրակի 10 փետրուար։

•

ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ թատերական ներկայացումը փետր. 24ի կիրակին։








ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆԸ

Երկուշաբթի տեղի ունեցաւ Փարիզի Քոնսերվաթուարի ձայնագրութեան մրցումը։ Հարիւրի մօտ մրցակիցներու մէջ յաջողեցան միայն քան հոգի, որոնցմէ մէկն է փոքրիկն Իուէն Ֆարչիեան, 12 տարեկան եւ ամենափոքրը մրցորդներուն։

---

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ

ԵՒ

ՀՈԳԵՀԱՆԳՍՏԵԱՆ ՊԱՇՏՕՆ

ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ ի

մահուան քառասունքին առթիւ

Կիրակի 27 Յունուար ժամը 17,30ին

Notre-Dame du Liban

17 Rue d'Ulm

Métro :Cardinal Lemoine

Կը պատարագէ՝

Հ. ԿԱՐԱՊԵՏ Ծ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

Առաջնորդ Ֆրանսայի Հայ Կաթողիկէ համայնքին

Նախաձեռնութեամբ Սամուէլ-Մուրատեան վարժարանի տեսչութեան եւ Մուրատ-Ռափայէլեան Նախկին աշակերտներու Միութեան։

Կը հրաւիրուին ազգային կազմակերպութիւնները, միութիւնները եւ հանգուցեալ Վարդապետին յիշատակը յարգողները։

⁂

Անհատական հրաւէր ղրկուած չըլլալով կը խնդրուի ներկայ իլլ այդ նկատել։

---

ՑԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Ֆր. Կ. Խաչի Պանթէօ-Քաշանի մասնաճիւղին կողմէ

Salle des Ingénieurs de l'Ecole Centrale des Arts et Manufactures

8, Rue Jean-Goujon

Փետրուար 10ին, կիրակի ժամը 15էն 23

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ

Եւրոպական պարեր

ղեկավարութեամբ ՎԱՐԴԻՎԱՆԵԱՆԻ

ՄԱՏՋԵԼԻ ԵՒ ՃՈԽ ՊԻՒՖԷ

---

ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

ՊԱՆԵՕ-ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէի խնջոյքը այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 3-10, Մէզոն Միքէլի սրահը, 67 Ավընիւ Ժան-Ժորէս, Քաշան։

Կը նուագէ ԹԱՌՈՒՍ ԳԱՐԵԳԻՆ։

Մատչելի պիւֆէ։ Մուտքը ազատ է։

Հաղորդակցութիւն՝ Մէթրօ Սոյի դիծէն եւ իջնել Պանեօյի կայարանը։

---

ԿԸՈՒԶՈՒԻ

Առանձին կին մը, ընկերակցելու համար տարեց կնոջ մը։ Բնակարանը ապահով։

Դիմել՝ Գափամաճեան ակնոցի տունը, 60 rue Lafayette, Փարիզ։

Imp. Araxes - 46, rue Richer. Paris (9ᵉ)

ՇԱՏ ԿԱՐԵՒՈՐ

«Յառաջ»ի չէք-փոսթալը վերապահուած է միայն թերթին պատկանող գումարներու. — բաժնեգին, ծանուցում, գործակալութիւն։

«Մանտա-քարտ»ով ղրկել բոլոր միւս առաքումները՝ բարենպատակ կազմակերպութիւններու նուէրները, ուրիշ թերթերու բաժնեգիններ, գիրքի գրամներ եւն.։

---

ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Լիոնի Լուսաւորչի դպրոցին Ս. Ծնընդեան ու Ամանորի հանդէսը այս կիրակի ժամը ճիշդ 15ին, Քրիստոնեայ Միութեան սրահին մէջ, 5 Քուր Լաֆայէթ։

Ճոխ յայտագիր. Ամանորի մաղթանքներ, արտասանութիւններ, խմբերգներ, հայկական պարեր, զաւեշտ եւ աւանդական Կաղանդ Պապան։ Կը հրաւիրուի գաղութը, հայկական ջերմիկ մթնոլորտի մէջ ապրելու քանի մը ժամ։

Մուտքը ազատ է եւ սրահին ջերմութիւնը ապահովուած։

---

ՊԱՏԱՐԱԳ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Այս կիրակի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8ին, հանդիսաւոր պատարագ ժամը 10ին։ Կը պատարագէ եւ կը քարոզէ կաթող. պատուիրակ Սեբովբէ եպիսկ. Մանուկեան։

---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Աննա Ճօշխունեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Օհաննէս Ճօշխունեան, Տէր եւ Տիկին Ղազարոս Ճօշխունեան, Տէր եւ Տիկին Յովակիմ Հեքիմեան, Տէր եւ Տիկին Մելքոն Ատանալեան, Պ. Թորոս Կոտիկեան եւ բոլոր բարեկամները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, նամակով եւ հեռագրով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ աներհօր

ԿԱՐԱՊԵՏ ՃՕՇԽՈՒՆԵԱՆԻ

մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ Յունուար 10ին։

---

ԾԱԽՈՒԷ

ՔԼԱՄԱՐԻ մէջ կօշիկի խանութ մը, արհեստանոցով եւ բոլոր մեքենաներով։ Կը յարմարի նաեւ ուրիշ արհեստի կամ առեւտուրի։ Վարձակալութիւնը (պայ) նոր է։ Մանրամասնութեան համար դիմել՝

Setrak Kanayan
11. Bd. Rodin Issy-les-Moulineaux
(Seine)

ԾՆՈՒՆԴ

Տէր եւ Տիկ. Հրանդ Բալուեան կը ծանուցանեն ծնունդը իրենց երկրորդ զաւկին՝ ԱՐԱՄի, Փարիզ, 24 Յուն. 1957ին։

Այս առթիւ Բալուեան ընտանիքը կը նուիրէ 1000 ֆր. Կապոյտ Խաչի կայանին, 1000 ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման եւ 1000 ֆր. «Հայ-Բոյժ»ի։

---

ՅՈՒՇԱՏԵՏՐ

•

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Ռոստոմ» խումբի ժողովը, այս շաբաթ ժամը 21ին, Փլաս տէ Ֆէթի սովորական սրճարանը։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը, այս հինգշաբթի երեկոյեան ժամը ճիշդ 9ին, 17 rue Blaise։

ՄԱՐՍԷՅԼ.— Շրջ. կոմիտէն կարեւոր խորհրդակցութեան կը հրաւիրէ Նոր Սերունդի Շրջ. վարչութիւնը, Ակնունի ենթակոմիտէի վարչութիւնը, Նոր Սերունդի Սիամանթօ խումբի վարչութիւնը եւ ղեկավար ընկերը, այս շաբաթ ժամը 21ին, Սէն Լուի սովորական հաւաքատեղին։ Ներկայ պիտի ըլլան Շրջ. կոմիտէի ներկայացուցիչները։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ժողովի կը հրաւիրէ «Հայաստան» խումբը, այս շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. կոմիտէի ներկայացուցիչը։

ՄԱՐՍԷՅԼ.— Սէնթ Անթուանի Հ. Յ. Դ. «Ընկեր Կարօ» ենթակոմիտէի ընդհ. ժողովը ընկեր Ս. Պօյաճեանի բնակարանը, այս կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3ին։ Կը խնդրուի Հ. Յ. Դ. Վռամեան ենթակոմիտէի վարչութենէն ներկայ ըլլալ։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընդհ. ժողովը, այս կիրակի առաւօտ ժամը 9ին, Ահարոնեան ակումբը։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՇԱՒԻԼԻ կրօնական ընկերակցութեան ընդհ. ժողովը այս շաբաթ գիշեր ժամը 21ին, Քափէ Թապա լ'Օսթիի սրահին մէջ։ Օրակարգ՝ վարչութեան հրաժարականը եւ նոր ընտրութիւն։ Բարոյական եւ նիւթական հաշուետուութիւն։

---

ԼՍԱՐԱՆԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆ
ՌՈՆԻ ՍՈՒ ՊՈՒԱՅԻ

Երուանդ Գրիգորեան (դասախօս), նիւթը՝ «Մխախոտի մշակումը, զարգացումը եւ հետեւանքը», շաբաթ երեկոյ ժամը 9ին, Քաֆէ Քոմէրս։

---

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Տարեկան ՑԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ կիրակի, 3 փետրուար, ժամը 16-24 Լէ Զ'ԱՄԲԱՍԱՏԷՕՐ, 3, Ավընիւ Կաբրիէլ (Շան զ'Էլիզէ)

Հռչակաւոր նուագախումբ ՌԱՄՈՆ ՄԷՆՏԻԶԱԲԱԼ

ԼՈԼԱ ՄՈՐԷՆՕ (երգ)

ՕՐ. ԱՅՏԱ ԱԶՆԱՒՈՒՐ (ԵՐԳ)

Իրանահայ յայտնի պարուհի Լ. ԱՒԵՏԻՍԵԱՆ պիտի պարէ հայկական, կովկասեան եւ պարսկական պարեր

Կանխաւ ապահովել սեղանները հեռաձայնելով Էլիզէ 67-03։ Մուտք 500 ֆրանք

